## Մուսոլինի խախուզին առաջին քառը

Գէյրութէն կը հեռագրեն թէ Տրիպոլիս հասաւ Մուսոլինի քարիզին առաջին բեռը, նորահաստատ խոզովակներու միջոցաւ: Ամէնը 14.000 թոն է եւ ութսրաթ օր ճամբայ հանուեցաւ դէպի Հայֆա.

## Քոլերան կը ճարակի Հնդկաստանի մէջ

Կալկաթայէն կը հեռագրեն թէ քոլերան սաստկօրէն կը ճարակի ամբողջ Հնդկաստանի, եւ մասնաւորապէս կեդրոնի նահանգներուն մէջ: 1500 հոգի մեռած են անցեալ շաբթու, ինչ որ 5500ի կը բարձրացնէ մէկ ամսուան մահերուն թիւը: Ամէն կողմ ներարկումներ կը կատարուին: Վարակման գլխաւոր պատճառն այն է որ բնիկները խուճապի մատնուած կը փախչին այն գիւղերէն ուր ամէնէն շատ մահ կը պատահի:

## Հ. Յ. Դ.

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓՈՆԹԷՐԻ (Ավինեօն), Մուրատ խումբի ժողովը այսօր կիրակի ժամը 2ին սովորական ժամադրավայրին մէջ: Կը խօսի ընկեր Ն. Աշգին.

ԼԻՈՆԻ Քեռի խումբի ժողովը այսօր կիրակի կէս օրէ յետոյ ժամը 1ին սովորական հաւաքատեղին: Կը խօսի ընկ. Ստ. Մելտոնեան:

ԿԱՐՏԱՆԻ ենթակոմիտէի ժողովը այսօր կիրակի առաւօտ ժամը 9ին, Դաշնակցութեան Տան մէջ: Կը խօսի ընկ. Ստ. Միլտոնեան:

ԼԱՍԻՕԹԱՅԻ Խաժակ խումբի ժողովը այսօր կիրակի առաւօտ ժամը 9ին: Պարտաւորի չներկայութիւն: Ներկայ կ'ըլլայ ընկ. Ն. Յակոբեան:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

### ԽԱՆԱՍՈՐԻ ՏԸՐԵԴԱՐՁԻ, ԱՌԹԻՒ

կազմակերպուած՝ ՊԱՆԷԶՕ-ՔԱՇԱՆԻ ԱՐԾԻՒ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

Այսօր կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Գ. ԿԱՐԻՆԵԱՆի պարտէզին մէջ

Կը խօսի՝ ընկեր ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

Գեղարուեստական ճոխ բաժին եւ նուագ:

Սիրայօժար մասնակցութեամբ դեր. Գ. Գ. ԿՈԹԻԿԵԱՆի եւ ԴՄԲԷԹԵԱՆի

բացօդեայ ներկայացում ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐ ը Պարոնեանի

ներկայացումը կը սկսի ժամը ճիշտ 3ին:

Առաւօտէն մինչեւ իրիկուն պարեր եւ ճոխ պիւֆէ

Կը նուագէ ՆՓՐԱՏ նուագախումբը

Տախքերու մասնակցութեան համար 3 ֆրանք:

Հաղ. միջ.-փօրթ տ'Օրլէանէն առնել 88 թիւ հանրակառքը եւ իջնել Պանեէօ:

×

Կազմակերպուած Հ. Յ. Դ. ՏԷՍԻՆԻ ԿՈՄԻՏԷԻՆ

ու մասնակցութեամբ ԲՈԼՈՐ ԽՈՒՄԲԵՐՈՒ

Այսօր կիրակի առաւօտ ժամը 9էն մինչեւ իրիկուն

ցէսինի կամուրջին աջ կողմի ծառախիտ անտառին մէջ (ՍՊԻՏԱԿ ՏԱՆ ետեւը)

Կը խօսին ընկերներ Ա. ՄԵԼՔՕՆԵԱՆ եւ Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին.— երգ, արտասանութիւն, նուագ, եւրոպական եւ հայկական պարեր ընկերակցութեամբ ընկ. ԳԷՈՐԳՃԵԱՆի ճուգին:

Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով

ԾԱՆ. — Անձրեւի պարագային հանդէսը տեղի կ'ունենայ Հ. Յ. Դ. ցան Թատերասրահին մէջ կէս օրէ վերջ ժամը 2ին, իսկ երեկոյեան ընտանեկան խնջոյք:

## Համաերիտասարդական մեծ դաշտահանդէս

ԿԱՐՇԻ (GARCHES) ՅՊԵՂԱՏԵՍԻԼ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

Կազմակերպուած՝ Զ. Ռ. Մ.ի ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

Այսօր Կիրակի, 5 Օգոստոս, առաւօտէն մինչեւ երեկոյ

Կը հրաւիրուին բոլոր երիտասարդական կազմակերպութիւնները, Հ.Մ.Ը.Մ., «ՍԻՓԱՆ» երգչախումբ, երիտասարդ դերասաններ եւ մարզիկներ:

Օգոստոս 5ը պիտի ըլլայ փարիզահայ երիտասարդութեան համար խանդավառութեան օր մը: Գիւղի լսօսին երիտասարդ ճեմառաններ:

ԵՐԳ, ՆՈՒԱԳ, ՊԱՐ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ, ԽԱՂԵՐ եւ ՄՐՑՈՒՄՆԵՐ,

ՃԱՇԱՐԱՆ ՈՒ ՃՈԽ ՊԻՒՖԷ

Ժամադրուեցէ՛ք բոլորդ ՎԱՀԱԳՆԵԱՆ դրօշին տակ:

Հաղորդակց. միջոց.— Սէն Լազարի կայարանէն առնել շոգեկառք եւ իջնել Կարշ, ուր առաջնորդներ պիտի սպասեն կայարանին մէջ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕՅ «ՄՈՒՐԱՏ» ԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ

12 Օգոստոս կիրակի ՄԷՕՏՕՆԻ ՊԱՂ ԱՂԲԻՒՐԻՆ ՄՕՏ

Մանրամասնութիւնները մօտ օրէն:



## «ՎԷՄ»ի

Մամուլի տակ է եւ շուտով լոյս կը տեսնէ 5րդ թիւը, հետեւեալ ճոխ բովանդակութեամբ.-

Իրօ, «Մի հատուած Յուշերից».— Յ. Զաւրեան, «Ըայեւմ նովաս».— Տօր Գ. Ղորղանեան, «Հայաստանի Հանրապետութիւնը եւ Պետութիւնները» — Ա. Խոնդկարեան, «Ցպոգիֆիան Հանր. Հայաստանում».— Ծամսան, «Հայաստանի անդրանիկ դեսպանը Պարսկաստանում».— Պրօֆ. Զ. Աւալով, «Բաթումի խորհրդաժողովը».— «Պարսկաստանի պահանջները Հաշտ. վեհաժողովից».— ԱՆՑԵԱԼԷՆ՝ (Յ. Թոչարեան, Վ. Գարտաշեան, Պրօֆ. Գայաեան եւ այլք).— Հին Թուղթեր, Կեանք եւ Մշակոյթ (Դ. Եղիկեան, Վ. Մինախորեան եւայլն).— Գիրք եւ Մամուլ.— Գրախօսական. Յաւելուած, Վ. Եպ. Մանկունի.— Գէորգ Դ. եւ իր ժամանակը. Նկարներ:

Կը խնդրուի բաժանորդներէն եւ գործակալներէն շուտով փակել հաշիւները:

ՎԷՄի հասցէն փոխուած ըլլալով՝ կը խնդրուի այսուհետեւ նամակ, գրամ, թերթ եւայլն ուղարկել նոր հասցէով.-

S. VRATZIAN

13, Rue des Platanes Cité Jardins. Plessis – Robinson (Seine), France:

Բաժանորդագրութեան պայմաններ

| | |
|---|---|
| Ամերիկա, Մեծն Բրիտանիա, Եգիպտոս եւ Իտալիա | 60 ֆր. |
| Ֆրանսա եւ այլ երկիրներ | 50 ֆր. |
| Ռումանիա, Պուլկարիա, Յունաստան, Սուրիա եւ Պարսկաստան | 40 ֆր. |

## ՀՐԱՉ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

## «ՄԵՐ ԿԵԱՆՔԸ»

ՎԷՊ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԵԱՆՔԷ

Գին 15 ֆրանք, փոստի ծախքով, միայն կանխիկ. Ֆրանսա 16 ֆր. Արտասահման՝ 17 ֆրանք

Դիմել.— H. Zartarian, 126, Ave. Simon Bolivar, Paris (19) կը ծախուի նաեւ ՅԱՌԱՋի խմբագրատունը:






## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱԼՖՈՐՎԻԼԻ մէջ կազմուած է համախոհքարացիներու Վերաշինաց Միութեան մասնաճիւղ մը: Թոզաւոր եւ Շրջանի հայրենակիցներէ կը խնդրուի իրենց մասնակցութիւնը եւ օժանդակութիւնը: Դիմել՝ Միութեան ատենապետուհի Տիկին Եկմէնիճեանի, 26bis rue des Goujons, Alfortville (Seine):

## ՀՐԱՒԷՐ

Փարիզի եւ Երջանի Հիգրանակերտցիներուն.—

Տիգրանակերտի եւ Շրջանի հայրենակիցները անխտիր ընդհ. ժողովի կը հրաւիրուին խիստ կարեւոր խորհրդակցութեան մը համար վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8-30ին 32, Ավընիւ Կոպլէն, Մէթրօ՝ Կոպլէն: Յեղեկատու Մարսին

ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Անուշավաճառ Յովհաննէսեան փոխադրած է իր խանութը, Marque déposée "MELKON", 4 RUE DES PAVILLONS, PARIS (20): Tél. Ménilmontant 50 — 47:




Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant: H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13e)

## Բուռն փոթորիկ Սեւ ծովու մէջ

Պուրկազէն կը հեռագրեն թէ սարսափելի փոթորիկ մը կը տիրէ Սեւ Ծովուն մէջ, 17 ժամէ ի վեր: Միեւնոյն ատեն կարկուտ իջած ըլլալով, հեռագրական եւ ելեկտրական ձողեր տապալած, ծառեր արմատախիլ եղած են: Կարկուտը 15 վայրկեան տեւած ըլլալով, շատ մեծ վնասներ պատճառած է: Մինչեւ 400 կրամ ծանրութեամբ կարկուտ գտնուած է: Քաղաքին ապակիները խորտակուած, շատ մը տանիքներ վնասուած են: Ելեկտրական լոյսը չի բանիր: Պուրկազ – Անխիալօ գիծը քշուած է ջուրերէն:

### ԿԱՐՄԻՐՆԵՐԸ ԹՌՈՒՑԻԿՆԵՐՈՎ Կ'ՈՂՈՂԵՆ ԱՄԵՐԵԿԱՆ

Շիքակոյէն կը հեռագրեն թէ հարիւր հազարաւոր համայնավարական պաշտօնական թռուցիկներ բաշխուած են, որոնցմով կը պահանջուի յեղափոխութեան դիմել ամբողջ Մ. Նահանգներուն մէջ, խորհրդային իշխանութիւն հաստատելու համար: Ոստիկանութիւնը բռնեց շատ մը թռուցիկներ, բայց կ'ըսուի թէ հարիւր հազար օրինակ անցած է բանուորներուն ձեռքը:

### ՄԱՐՍԷՅԼ-ԼԻՈՆ ՀԵԾԵԼԱՆԻԻ ՄՐՑՈՒՄԸ

ԼԻՈՆ, 17 օգոստոս.— «Յառաջ»ի մարզական աշխատակիցը օրը օրին գրած էր Մարսէյլ – Լիոն հեծելանիւի մրցումի մասին, զոր կազմակերպած է «Լը Փրոկրէ» թերթը: Ինչպէս կը յիշուի, այս տարուան մրցումին կը մասնակցէին նաեւ երեք հայ մարզիկներ, Արիազեան՝ Մարսէյլէն, Զուլումեան Լիոնէն եւ Մխիթարեան Լանսէյէն:

Լիոնի մարզարանը լեցուած էր հազարաւոր երկսեռ բազմութեամբ: Ձայնարձակը վայրկեանը վայրկեանին լուրեր կուտար որ եւ է քաղաք հասնող մարզիկներու մասին: Չկայ մրցում մը որ այս տարուան պէս դժուար եղած ըլլայ, այս պատճառաւ մրցորդները մէկ ժամ յապաղումով հասան Լիոն: Բայց ժողովուրդը հետաքրքիր է եւ անհամբեր կը սպասէ կիզիչ արեւին տակ: Վերջապէս ձայնարձակը աւետեց մարզիկներու Լիոն հասնիլը: Քառորդ ժամ վերջ արդէն հասած են մարզադաշտ վեց հոգի իրարու ետեւէ շարուած: 350 քիլոմեթր ճամբայ կտրելէ եւ մարզարան մտնելէ վերջ երեք անգամ շրջան ընել պէտք է: Ցոգնած մարզիկները կարծես վերստին ոյժ կ'առնեն, ժողովուրդը կը քաջալերէ ծափերով, երեք անգամ շրջան ընելէ վերջ որոշեալ կէտը ով որ շուտ հասնի, կը հանդիսանայ առաջին: Այս վեց հոգիին մէջէն փէլէ որ մարզադաշտ մտնողներու առաջինն էր, երեք անգամուան շրջանին մէջ կորսնցնելով առաջնութիւնը, իր տեղը տուաւ Փաբիզցի Լիւսիէն Վէյսին... Այնուհետեւ 5 – 10 վայրկեան տարբերութեամբ եկան իրենց հետեւորդները: Ինչպէս «Յառաջ»ը գրեց, մրցումը լքողները շատ եղան: Ուրախալի է որ մեր մարզիկները ճամբան չլքելէ զատ, 100 մարզիկներէն 26րդ եղած է Արիազեան, 36րդ Մխիթարեան եւ 38րդ Զուլումեան:

Այս առթիւ, թելադրութիւն մը.— Ֆեդացիները շատ կը հետաքրքրուին մարզանքով, եւ ունին մարզական տեսակ տեսակ կազմակերպութիւններ: 20 – 25 հոգի քով քովի գալով կը կազմեն մարզական խումբ մը: Մենք Լիոնի մէջ ունինք հեծելանւորդ շատ մը երիտասարդներ, որոնք եթէ քով քովի գան կ'ունենանք շատ մը տաղանդներ: Ինչո՞ւ մենք ալ չունենանք կազմակերպուած խումբեր, օրինակ առնելով իրենց Ֆրանսացի ընկերներէն:

Այդպիսի կազմակերպութեանց շնորհիւ, մեր երիտասարդները պիտի կրնան աւելի վստահութեամբ մասնակցիլ մրցումներուն, որովհետեւ ուժէն աւելի ձեւերու վարժութիւնն է որ կը փնտռուի:

Մ. Տ. Գ.

■■■■■■■■

ԱւՍՏՐԻՈՅ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ եւ Մուսոլինիի տեսակցութիւնը տեղի պիտի ունենայ իտալական ռազմափորձերու պահուն: Վարչապետը նորկայ պիտի ըլլայ կարգ մը ռազմախաղերու: Կը հաստատուի թէ Իտալիա վերջնապէս համաձայնած է որ 8000 հոգի ուղեցուի Աւստրիոյ բանակին վրայ:

---



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ԱՐԺ. Տ. ՄԵՍՐՈՊ ԱՒԱԳ ՔՀՆՅ. Տ. ՄԵՍՐՈՊԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ քառասունքին առթիւ հոգեհանգստեան արարողութիւն պիտի կատարուի այսօր Կիր. առաւօտ, Փարիզի Հայոց եկեղեցւոյն մէջ, 15, Րիւ Ժան Կուժոն:

Կը հրաւիրուին ազգականները, բարեկամները եւ հանգուցեալին յիշատակը յարգողները:

ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ

---



---

## FILMS RECOMMANDÉS

### ՓԱԹԷ–ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ

Ցայտագիր 17 օգոստոս, ուրբաթ օրուընէ մինչեւ հինգշ. 23 օգոստ.

MARIGNAN La maison dans la dune (P. R. Willm. M. Ozeray).
MARIVAUX Le scandale (Gaby Morlay, Henri Rollan).
MOULIN ROUGE. Le grand jeu (P. R. Willm Marie Bell).
MAX LINDER. Le train de 8 h. 47 (Bach, Fernandel).
IMPERIAL. Poliche (Marie Bell. Constant Remy).
OMNIA CINE INFORMATIONS. Actualités Mondiales - Cocaïne (Doc.).
VICTOR HUGO. L'Ordonance - Miquette et sa mére
ROYAL. Paquebot Tenacity - La fleur d'oranger.
BARBES. Le champion du régiment - L'Héritier du bal tabarin.
BELLEVILLE. Le petit roi. Paris Méditerranée.
CAPITOLE. Le champion du régiment. L'Héritier du bal tabarin.
DEMOURS. C'était un musicien. Police privée.
EXCELSIOR. Tire au flanc. L'Heritier du bal tabarin.
FEERIQUE. La dame de chez Maxim. Enlevez - moi.
LECOURBE. Poil de carotte. Enlevez-moi.
LOUXOR. Sa meilleure cliente. La dame de chez Maxim
LUTETIA. Clôture annuelle.
LYON. L'Enfant de ma soeur. Les surprises du divorce.
MAGIQUE. Une vie perdue. Le roi des resquilleurs.
MAINE. Une vie perdue. Les aventures du roi Pausole.
METROPOLE. Bach millionnaire. L'Héritier du bal tabarin.
MONTPARNASSE. Poil de carotte Sa meilleure cliente
MOZART. Mauvaise graine. La fleur d'oranger.
PALAIS DES GLACES. Je suis un évadé. Le bluffeur.
PATHE ORLEANS. Paris Méditerranée J'ai peur de moi.
RECAMIER. Je suis un évadé. L'Athlète incomplet.
ROCHECHOUART. Les deux orphelines. Enlevez - moi.
SAINT CHARLES. La fleur d'oranger Après l'amour.
SAINT MARCEL. Mauvaise graine. Pour être aimé.
SELECT. Mauvaise graine. La fleur d'oranger

BANLIEUE

ALHAMBRA D'ASNIERES. L'Epervier. La chanson d'une nuit.
CASINO DE CLICHY. Son altesse impériale. En v'là des histoires
COLOMBES. L'Enfant de ma soeur. Sang viennois
KURSAAL AUBERVILLIERS. L'Epervier. La chanson d'une nuit.
KURSAAL BOULOGNE. King - kong. Interview.
OLYMPIA DE CLICHY. Bach millionnaire. Les surprises du divorce.
PATHE CINEMA PALACE (Boulogne). L'Epervier. La chanson d'une nuit.



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13e)

